# ԳԻՐՔ ԾՆՆԴՈՑ

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

1 Ի սկզբանէ Աստուած ստեղծեց եր-
կինքն ու երկիրը: 2 Երկիրն անձեւ ու
անկազմ էր, խաւար էր տիրում անհունի
վրայ, եւ Աստծու Հոգին շրջում էր ջրերի
վրայ: 3 Եւ Աստուած ասաց. «Թող լոյս
լինի»: Եւ լոյս եղաւ: 4 Աստուած տե-
սաւ, որ լոյսը լաւ է, եւ Աստուած լոյսը
բաժանեց խաւարից: 5 Աստուած լոյսը
կոչեց ցերեկ, իսկ խաւարը կոչեց գիշեր:
Եւ եղաւ երեկոյ, եւ եղաւ առաւօտ՝ օր
առաջին:
6 Աստուած ասաց. «Թող տարածու-
թիւն առաջանայ ջրերի միջեւ, եւ ջրերը
թող բաժանուեն ջրերից»: Եւ եղաւ այդ-
պէս: 7 Աստուած ստեղծեց տարա-
ծութիւնը, որով Աստուած տարածու-
թեան ներքեւում եղած ջրերը անջրպե-
տեց տարածութեան վրայ եղած ջրերից:
8 Աստուած տարածութիւնը կոչեց եր-
կինք: Աստուած տեսաւ, որ լաւ է: Եւ
եղաւ երեկոյ, եւ եղաւ առաւօտ՝ օր երկ-
րորդ:
9 Աստուած ասաց. «Թող երկնքի
տակ գտնուող ջրերը հաւաքուեն մի
տեղ, եւ երեւայ ցամաքը»: Եւ եղաւ
այդպէս. երկնքի տակի ջրերը հա-
ւաքուեցին մի տեղ, ու երեւաց ցամաքը:
10 Աստուած ցամաքը կոչեց երկիր,
իսկ հաւաքուած ջրերը կոչեց ծով: Աս-
տուած տեսաւ, որ լաւ է: 11 Աստուած
ասաց. «Թող երկիրը իր տեսակի ու իր
նմանութեան սերմը պարունակող դա-
լար բոյս եւ իր տեսակի ու իր նմա-
նութեան սերմը պարունակող, իր տե-
սակի միրգ տուող պտղաբեր ծառ
աճեցնի երկրի վրայ»: Եւ եղաւ այդպէս.
12 հողը ամբողջ երկրի վրայ ցանելու
սերմը իր մէջ պարունակող դալար բոյս
եւ իր տեսակի սերմը իր մէջ պարու-
նակող, միրգ տուող ծառ աճեցրեց:
Աստուած տեսաւ, որ լաւ է: 13 Եւ եղաւ
երեկոյ, եւ եղաւ առաւօտ՝ օր երրորդ:
14 Աստուած ասաց. «Թող լուսա-
տուներ լինեն երկնքի տարածութեան
մէջ, որպէսզի լուսաւորեն երկիրը եւ
իրարից բաժանեն ցերեկն ու գիշերը:
Դրանք թող լինեն, որպէսզի ցոյց տան
տարուայ եղանակները, տօնական օրերն
ու տարիները, 15 թող լինեն, ծագեն
երկնքի տարածութեան մէջ՝ երկիրը
լուսաւորելու համար»: Եւ եղաւ այդ-
պէս: 16 Աստուած ստեղծեց երկու մեծ
լուսատուներ. մեծ լուսատուն՝ ցերեկն
իշխելու, իսկ փոքր լուսատուն՝ գիշերն
իշխելու համար, ինչպէս նաեւ աստղեր:
17 Աստուած դրանք դրեց երկնքի տա-
րածութեան մէջ՝ երկիրը լուսաւորելու
համար, 18 ինչպէս նաեւ ցերեկուայ ու
գիշերուայ վրայ իշխելու եւ լոյսն ու
խաւարը իրարից բաժանելու համար:
Աստուած տեսաւ, որ լաւ է: 19 Եւ եղաւ
երեկոյ, եւ եղաւ առաւօտ՝ օր չորրորդ:
20 Աստուած ասաց. «Թող ջրերն
արտադրեն կենդանութեան շունչ ունե-
ցող զեռուններ, եւ երկրի վրայ ու
երկնքի տարածութեան մէջ թող
թեւաւոր թռչուններ լինեն»: Եւ եղաւ
այդպէս: 21 Աստուած ստեղծեց խոշոր
կէտեր, կենդանութեան շունչ ունեցող
ամէն տեսակ զեռուններ, որ արտա-
դրեցին ջրերն ըստ տեսակների, եւ ամէն
տեսակ թեւաւոր թռչուններ՝ ըստ տե-
սակների: Աստուած տեսաւ, որ լաւ է:
22 Աստուած օրհնեց դրանց ու ասաց.
«Աճեցէ՛ք, բազմացէ՛ք եւ լցրէ՛ք ծովերի
ջրերը, իսկ թռչունները թող բազմանան
երկրի վրայ»: 23 Եւ եղաւ երեկոյ, եւ
եղաւ առաւօտ՝ օր հինգերորդ:
24 Աստուած ասաց. «Թող երկիրն
արտադրի չորքոտանի կենդանիներ
իրենց տեսակներով, սողուններ եւ գա-
զաններ իրենց տեսակներով»: Եւ եղաւ
այդպէս: 25 Աստուած ստեղծեց երկրի
գազաններն իրենց տեսակներով, անա-
սուններն իրենց տեսակներով եւ երկրի
բոլոր սողուններն իրենց տեսակներով:
Աստուած տեսաւ, որ դրանք լաւ են:
26 Աստուած ասաց. «Մարդ ստեղ-
ծենք մեր կերպարանքով ու նմանու-
թեամբ, նա թող իշխի ծովի ձկների,
երկնքի թռչունների, ողջ երկրի անա-
սունների եւ երկրի վրայ սողացող բոլոր
սողունների վրայ»: 27 Եւ Աստուած
մարդուն ստեղծեց իր պատկերով, Աստ-
ծու պատկերով ստեղծեց նրան, արու եւ
էգ ստեղծեց նրանց: 28 Աստուած օրհնեց
նրանց ու ասաց. «Աճեցէ՛ք, բազմացէ՛ք,
լցրէ՛ք երկիրը, տիրեցէ՛ք դրան, իշխե-
ցէ՛ք ծովի ձկների, երկնքի թռչունների,

ողջ երկրի բոլոր անասունների ու երկրի
վրայ սողացող բոլոր սողունների վրայ»:
29 Աստուած ասաց. «Ահա ձեզ
տուեցի ողջ երկրի վրայ տարածուած
սերմանելի բոլոր բոյսերի սերմերը եւ
իրենց մէջ պտուղ սերմանելու սերմ
պարունակող բոլոր ծառերը: Դրանք
թող ձեզ համար սնունդ լինեն, 30 իսկ
բոլոր կանաչ խոտերը երկրի բոլոր
գազանների, երկնքի բոլոր թռչունների
եւ երկրի վրայ սողացող բոլոր սողուն-
ների՝ բոլոր կենդանիների համար թող
լինեն կեր»: Եւ եղաւ այդպէս:
31 Աստուած տեսաւ, որ այն ամէնը,
ինչ ստեղծել էր, շատ լաւ է: Եւ եղաւ
երեկոյ, եւ եղաւ առաւօտ՝ օր վեցերորդ:

ԵԴԵՄԻ ՊԱՐՏԷԶԸ

2 Այսպիսով Աստուած ստեղծեց եր-
կինքն ու երկիրը եւ կարգաւորեց
դրանք: 2 Աստուած վեցերորդ[†] օրն
աւարտեց արարչագործութիւնը եւ իր
կատարած բոլոր գործերից յետոյ՝ եօթ-
ներորդ օրը, հանգստացաւ: 3 Աստուած
օրհնեց եօթներորդ օրը եւ սրբագործեց
այն, որովհետեւ այդ օրը Աստուած
հանգստացաւ իր այն բոլոր գործերից,
որ սկսել էր անել:
4 Այս է երկնքի ու երկրի արարչու-
թեան պատմութիւնը: Այն օրը, երբ
Աստուած ստեղծեց երկինքն ու երկիրը,
5 երկրի վրայ դեռ ոչ մի տունկ չէր
բուսել, դեռ ոչ մի դաշտային բոյս չէր
աճել, որովհետեւ Տէր Աստուած անձրեւ
չէր տեղացրել երկրի վրայ, եւ մարդ
չկար, որ մշակէր հողը, 6 բայց աղբիւր
էր բխում երկրից եւ ոռոգում ողջ
երկիրը: 7 Տէր Աստուած մարդուն
ստեղծեց երկրի հողից, նրա դէմքին
կենդանութեան շունչ փչեց, եւ մարդն
եղաւ կենդանի էակ:
8 Աստուած դրախտ տնկեց Եդեմում՝
արեւելեան կողմը, եւ այնտեղ դրեց իր
ստեղծած մարդուն: 9 Տէր Աստուած
երկրից բուսցրեց նաեւ ամէն տեսակի
գեղեցկատեսիլ ու համեղ մրգեր տուող
ծառեր, իսկ կենաց ծառը՝ բարու եւ
չարի գիտութեան ծառը, տնկեց դրախ-
տի մէջտեղում: 10 Գետ էր բխում Եդե-
մից, որպէսզի ոռոգէր դրախտը, եւ
այնտեղից բաժանւում էր չորս ճիւղերի:
11 Մէկի անունը Փիսոն էր: Նա է, որ
պատում է ամբողջ Եւիլատ երկիրը,
այնտեղ, ուր ոսկի կայ: 12 Այդ երկրի
ոսկին ազնիւ է: Այնտեղ կայ նաեւ սու-
տակ եւ դահանակ ակնաքարը: 13 Երկ-
րորդ գետի անունը Գեհոն է: Նա պա-
տում է Եթովպացւոց երկիրը: 14 Եր-
րորդ գետը Տիգրիսն է: Սա հոսում է
դէպի Ասորեստան: Չորրորդ գետը
Եփրատն է: 15 Տէր Աստուած իր ստեղ-
ծած մարդուն տեղաւորեց բերկրութեան
դրախտում, որպէսզի սա մշակի ու
պահպանի այն: 16 Տէր Աստուած պա-
տուիրեց Ադամին ու ասաց. «Դրախ-
տում ամէն ծառի պտուղներից կարող
ես ուտել, 17 բայց բարու եւ չարի
գիտութեան ծառից մի՛ կերէք, որով-
հետեւ այն օրը, երբ ուտէք դրանից,
մահկանացու կը դառնաք»:
18 Տէր Աստուած ասաց. «Լաւ չէ, որ
մարդը միայնակ լինի: Նրա նմանու-
թեամբ մի օգնական ստեղծենք նրա
համար»: 19 Տէր Աստուած ստեղծեց
նաեւ դաշտային բոլոր գազաններին,
երկնքի բոլոր թռչուններին եւ բերեց
Ադամի մօտ, որ տեսնի, թէ Ադամը ինչ
անուն կը տայ դրանց: Եւ Ադամն ինչ
անուն որ տար ամէն մի կենդանուն, այն
էլ կը լինէր դրա անունը: 20 Ադամը
բոլոր անասուններին, երկնքի բոլոր
թռչուններին եւ դաշտային բոլոր գա-
զաններին տուեց անուններ, բայց Ադա-
մը չգտաւ իր նմանութիւնն ունեցող մի
օգնական: 21 Տէր Աստուած թմրութիւն
բերեց Ադամի վրայ, եւ սա քնեց:
Աստուած հանեց նրա կողոսկրերից մէկը
եւ այդ տեղը մաշկով ծածկեց: 22 Տէր
Աստուած Ադամից վերցրած կողոսկրից
կին արարեց եւ նրան բերեց Ադամի
մօտ: 23 Ադամն ասաց. «Այժմ սա
ոսկոր է իմ ոսկորներից եւ մարմին՝ իմ
մարմնից: Թող սա կոչուի կին,
որովհետեւ իր ամուսնուց ստեղծուեց»:
24 Այդ իսկ պատճառով տղամարդը
թողնելով իր հօրն ու մօրը՝ պէտք է
միանայ իր կնոջը, եւ երկուսը պէտք է
լինեն մի մարմին: 25 Եւ երկուսն էլ՝
Ադամն ու իր կինը, մերկ էին ու չէին
ամաչում:

[†] Եբրայերէն՝ եօթներորդ:

### ՄԱՐԴՈՒ ԱՆՀՆԱԶԱՆԴՈՒԹԻՒՆԸ

**3** *Օձը երկրի վրայ Աստծու ստեղծած
բոլոր գազաններից աւելի խորամանկ*[†]
*էր: Օձն ասաց կնոջը. «Ինչո՞ւ Աստուած
ասաց, թէ դրախտում գտնուող բոլոր
ծառերի պտուղներից չէք կարող
ուտել»:* 2 *Կինն ասաց օձին. «Դրախտի
ծառերի պտուղներից կարող ենք ուտել:*
3 *Սակայն դրախտի մէջտեղի ծառի
պտղի համար Աստուած ասաց. “Դրա-
նից չուտէք եւ չմօտենաք, որպէսզի
չմեռնէք”»:* 4 *Օձն ասաց կնոջը. «Չէք
մահանայ,* 5 *որովհետեւ Աստուած գի-
տէր, որ այն օրը, երբ դրանից ուտէք, կը
բացուեն ձեր աչքերը, եւ դուք կը լինէք
աստուածների նման՝ կ'իմանաք բարին
ու չարը»:*
6 *Կինը տեսաւ, որ ծառի պտուղը լաւ
է ուտելու համար, ակնահաճոյ է եւ
գրաւիչ՝ ըմբռնելու համար*[‡]*: Նա առաւ
նրա պտղից, կերաւ եւ տուեց իր մօտ
կանգնած ամուսնուն, եւ նրանք կերան:*
7 *Երկուսի աչքերն էլ բացուեցին, եւ
նրանք հասկացան, որ մերկ են: Նրանք
թզենու տերեւներն իրար կարեցին եւ
իրենց համար գոգնոց շինեցին:* 8 *Երե-
կոյեան նրանք լսեցին Տէր Աստծու՝
դրախտում շրջագայելու ոտնաձայնը, եւ
Ադամն ու իր կինը Տէր Աստծուց թաք-
նուեցին դրախտի ծառերի մէջ:* 9 *Տէր
Աստուած կանչեց Ադամին ու ասաց
նրան. «Ո՞ւր ես»:* 10 *Ադամը պատաս-
խանեց. «Լսեցի քո ձայնն այստեղ՝
դրախտում, ամաչեցի, որովհետեւ մերկ
էի, եւ թաքնուեցի»:* 11 *Աստուած
ասաց նրան. «Ո՞վ յայտնեց քեզ, թէ
մերկ ես: Արդեօք կերա՞ր այն ծառի
պտղից, որից պատուիրել էի, որ
չուտես»:* 12 *Ադամն ասաց. «Այս կինը,
որ տուեցիր ինձ, նա՛ տուեց ինձ ծառի
պտղից, եւ ես կերայ»:* 13 *Տէր Աստուած
ասաց կնոջը. «Այդ ի՞նչ ես արել»: Կինն
ասաց. «Օձը խաբեց ինձ, եւ ես կերայ»:*

### ԱՍՏԾՈՒ ԴԱՏԱՍՏԱՆԸ

14 *Տէր Աստուած ասաց օձին. «Քանի
որ այդ բանն արեցիր, անիծեալ լինես
երկրի բոլոր անասունների ու գա-
զանների մէջ: Քո լանջի ու որովայնի
վրայ սողաս, ողջ կեանքումդ հող ուտես:*
15 *Թշնամութիւն պիտի դնեմ քո եւ այդ
կնոջ միջեւ, քո սերնդի ու նրա սերնդի
միջեւ: Նա պիտի ջախջախի*[†] *քո գլուխը,
իսկ դու պիտի խայթես նրա գարշա-
պարը»:* 16 *Իսկ կնոջն ասաց. «Պիտի
անչափ բազմացնեմ քո ցաւերն ու քո
հառաչանքները: Ցաւերով երեխաներ
պիտի ծնես, քո ամուսնուն պիտի
ենթարկուես, եւ նա պիտի իշխի քեզ
վրայ»:* 17 *Աստուած Ադամին ասաց.
«Քանի որ անսացիր քո կնոջ ձայնին եւ
կերար այն ծառի պտղից, որի՛ց միայն
քեզ պատուիրեցի չուտել, բայց կերար
դրանից, թող անիծեալ լինի երկիրը քո
արածի պատճառով: Տանջանքով հայ-
թայթես քո սնունդը քո կեանքի բոլոր
օրերին:* 18 *Փուշ ու տատասկ թող
աճեցնի քեզ համար երկիրը, եւ դու
դաշտային բոյսերով սնուես:* 19 *Քո երե-
սի քրտինքով ուտես հացդ մինչեւ հող
դառնալդ, որից ստեղծուեցիր, որով-
հետեւ հող էիր եւ հող էլ կը դառնաս»:*
20 *Եւ Ադամն իր կնոջ անունը դրեց
Կեանք, որովհետեւ նա է բոլոր
մարդկանց նախամայրը:* 21 *Տէր
Աստուած Ադամի ու նրա կնոջ համար
կաշուից զգեստներ պատրաստեց եւ
հագցրեց նրանց:*

### ԱԴԱՄՆ ՈՒ ԵՒԱՆ ԱՐՏԱՔՍՒՈՒՄ ԵՆ ԴՐԱԽՏԻՑ

22 *Տէր Աստուած ասաց. «Ահա Ա-
դամը դարձաւ մեզ նման մէկը, նա գիտի
բարին եւ չարը: Արդ, գուցէ նա ձեռքը
մեկնի, քաղի կենաց ծառից, ուտի եւ
անմահ դառնայ»:* 23 *Եւ Տէր Աստուած
արտաքսեց նրան բերկրութեան դրախ-
տից, որպէսզի նա մշակի այն հողը, որից
ստեղծուել էր:* 24 *Աստուած դուրս
հանեց Ադամին, բնակեցրեց բերկրու-
թեան դրախտի դիմաց եւ հրամայեց
քերովբէներին ու բոցեղէն սրին շուր-
ջանակի հսկել դէպի կենաց ծառը
տանող ճանապարհները:*

---

[†] Գրաբարում՝ *իմաստնագոյն:*

[‡] Եբրայերէնում՝ *իմաստուն դարձնելու համար:*

[†] Գրաբարում՝ *սպասեսցէ:*

